Տիրացյան, Գ. Ա. (1981) Երվանդյան Հայաստանի տարածքը (մ. թ. ա. VI դ. վերջ - մ. թ. ա. III դ. վերջ). Պատմա-բանասիրական հանդես, № 2 . pp. 68-84. ISSN 0135-0536

# ԵՐՎԱՆԴՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԱՐԱԾՔԸ
## (Մ. Թ. Ա. VI Դ. ՎԵՐՋ—Մ. Թ. Ա. III Դ. ՎԵՐՋ)*

Պատմ. գիտ. թեկնածու Գ. Ա. ՏԻՐԱՑՅԱՆ

## *ԱՔԵՄԵՆՅԱՆ ՍԱՏՐԱՊՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ*
## *(Մ. թ. ա. VI—IV դդ.)*

**Դարեհ I-ի, Քսերքսես I-ի, Արտաքսերքսես I-ի օրոք (մ. թ. ա. 520—430-ական թթ.)**— *Մ. թ. ա. VI դարի 20-ական թթ. կայսրության հիմքերը ցնցող ապստամբությունները ճնշելուց հետո Դարեհ I-ը իրագործեց վարչական ռեֆորմ, որով կայսրությունը բաժանվեց քսան սատրապությունների, իսկ Հայաստանը երկու՝ 13-րդ և 18-րդ սատրապությունների։ Նման իրավիճակը անփոփոխ մնաց մինչև մ. թ. ա. V դարի 30—20-ական թթ.։*

*1 3-ր դ  ս ա տ ր ա պ ո ւ թ յ ո ւ ն։ Հերոդոտի հանրահայտ վկայությունից (III, 93) գիտենք, որ 13-րդ սատրապությունն ընդգրկում է Պակտիկան, արմեններին ու նրանց հարևաններին մինչև Սև ծով։*

*Պակտիկայի տեղադրումը հանդիպում է դժվարությունների. ոմանք առաջարկում են Ուրմիայի շրջանը, այլոք այն կապում են Արևելյան Տիգրիսի Բոհտան անվան հետ[1]։ Քանի որ ուրիշ ոչ մի այլ հեղինակի կողմից Պակտիկան չի հիշատակվում Հայաստանում և քանի որ հենց ինքը Հերոդոտը Պակտիկան ու պակտյուններին տեղադրում է Ասիայի խորքերում, կարծիք է հայտնվել, որ Պակտիկա անունը Հերոդոտի տեքստի ձեռագիր արտագրողների կողմից սխալմամբ կցվել է 13-րդ սատրապությանը վերաբերող նախադասության սկզբին[2]։*

*Հերոդոտի երեք այլ վկայությունների հիման վրա (I, 72, V, 49, 52) հնարավոր է որոշել արմենների տեղադրումը՝ մատիենների երկրից առնվազն մինչև Հալիսի ակունքներում գտնվող Հայկական լեռը, մի հանգամանք, որը որոշ իմաստով համընկնում է հայկական թագավորության տարածքի մասին «Կյուրոպեդիայի» տվյալների հետ։ Սատրապության կազմի մեջ մտնող հայերի հարևաններ պետք է համարել այն ցեղերին, որոնք Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան մասերից պոնտական լեռների վրայով տարածվում էին դեպի Սև ծովի ափերը։*

*Այժմ քննենք սատրապության սահմանները։*

*Արևմտյան սահմանը.— Հերոդոտի մի քանի հատուկ վկայություններից պարզվում է, որ արևմուտքից Հայաստանի սահմանը Եփրատն էր, որը Հայաստանը բաժանում էր Կիլիկիայից։ Արևմտյան բնական այս սահմանը խախտվում էր հյուսիսային հատվածներում, որտեղ նա տեղադրվում էր դեպի արև-*

---

** Երվանդյան Հայաստանի մ. թ. ա. VI դարի տարածքի մասին տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1980, № 4։*

1 Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, Петербург, 1908, стр. 394.

2 O. Leuze, Die Satrapieneinteilung in Syrien und im Zweistromlande von 530—320, Halle, 1935, S. 163—165.

մուտք, ընդգրկելով ոչ միայն Հալիսի ակունքների շրջանը, Կապադովկիայի արևելյան շրջաններն ու ապագա Փոքր Հայքի հիմնական տարածքը, այլ շարունակվելով հյուսիս-արևմտյան ուղղությամբ, ինչպես երևում է պատմիչի վկայությունից, դուրս էր գալիս դեպի ծով։

Վերջին հանգամանքը ենթակա է հատուկ քննության։

Մարաստանի ու Լիդիայի միջև 585 թ. կնքված հաշտության պայմանագրի համաձայն երկու պետությունների միջև սահման ճանաչվեց Հալիս գետը, որով Մարաստանի փոքրասիական տիրույթը Հալիսից արևելք, Ի. Դյակոնովի ենթադրությամբ, միացվեց Հայաստանին կամ կառավարվում էր հայ թագավորների ձեռքով։ Նման պայմաններում Հայաստանը այս կամ այն ձևով դուրս էր գալիս դեպի ծով, քանի որ մարական այդ տիրույթը իր մեջ էր ամփոփում նաև Սև ծովի ափը՝ Հալիսի գետաբերանից դեպի արևելք՝ հավանաբար մինչև Գայլ գետի ստորին հոսանքը, գուցե և մինչև ապագա Փառնակիա՝ ծովային խալիբների երկիրը։ Ինչպես արդեն տեսանք, նման վիճակը բացատրվում է Հայաստանի էթնոքաղաքական տարածմամբ դեպի արևմուտք ու հյուսիս-արևմուտք, որով արդեն ի սկզբանե ապագա Փոքր Հայքի տարածքը ամբողջությամբ, Կապադովկիայի ու Պոնտոսի որոշ մասեր մտնում էին նրա կազմի մեջ։ Այդ պատճառով էլ Հալիսից արևելք գտնվող նվաճված տարածքը՝ ծովափը ներառյալ, պետք է նույնպիսի ճակատագիր ունենար և ենթարկվեր Հայաստանին։

Զարգացման հաջորդ փուլը կապված է Կյուրոսի անվան հետ։ Նա նվաճում է Լիդիան և արևմտյան Փոքր Ասիան ու ստեղծում կապադովկյան սատրապությունը, որին միացվում են Հալիսից արևելք ձգվող հողերը։ Հայաստանը զրկվում է Հալիսի աղեղի մեջ մտնող տարածքից, բայց ոչ կապադովկական բոլոր հողերից, ինչպես Հալիսից հարավ, այնպես էլ Փոքր Հայքից արևմուտք ու հյուսիս։ Այս կապակցությամբ իրադրությունը փոխվում է նաև մերձծովյան շրջանում[3]։ Սահմանը Հալիսից տեղափոխվում է Գայլ գետ և այդտեղից է, որ ծովափը՝ ներառյալ ծովային խալիբների տարածքը ապագա Փառնակիայի շրջանում, մտնում է Հայաստանի կազմի մեջ։

Հյուսիսային սահմանը.— Ի վերջո, երբ քննում ենք 13-րդ հայկական սատրապության ելքը դեպի ծով, պետք է հաշվի առնենք նրա սահմանները մի կողմից 3-րդ սատրապության, մյուս կողմից՝ 19-րդ սատրապության հետ, ինչպես նաև այսպես կոչված հարևաններին և նրանց տեղադրման հարցը։

Սկսենք վերջին հարցից։

Հարևանների շարքում առաջին հերթին պետք է հիշատակել խալդայներին, որոնք առնվազն Կյուրոսի օրոք արդեն նվաճվել էին և մտցվել հայկական թագավորության կազմի մեջ։ Մ. թ. ա. V դարում (հիմնականում այդ դարին են վերաբերում 13-րդ սատրապության մասին եղած տվյալները) խալդայները հավանաբար վերջնականապես բաժանվել էին երկու՝ լեռնային ու ծովային զատորոշ մասերի։ Այդ երևում է, ինչպես կփորձենք ցույց տալ, նաև այն հանգամանքից, որ այդ երկու մասերը գտնվում էին տարբեր սատրապությունների մեջ։ Թե խալդայներից բացի ովքեր կարող էին մտնել հա-

[3] Բնական է, որ կապադովկյան մարզի կազմավորման կապակցությամբ կապադովկյան ծովափը Հալիսից արևելք ու Գայլ գետից արևմուտք, որտեղ հիմնվել էր Ամիսոս քաղաքը, պետք է մտներ նրա կազմի մեջ ու հետևաբար դուրս գար Հայաստանի ենթակայությունից։

րևաններ հասկացողության մեջ՝ դժվար է ասել, գուցե լևկոսիրացիներից նրանք, ովքեր ծովափով անցել էին Գալլ գետից արևելք։

Պոնտական ափը նույնպես ամփոփված էր Դարեհի սատրապությունների մեջ. այժմ տեսնենք, թե որ վայրերով կարող էր անցնել նրանց սահմանը ափ դուրս եկող 13-րդ սատրապության հետ։

Հերոդոտի տվյալների համաձայն 19-րդ սատրապության կազմի մեջ էին մտնում մոսխերը, տիբարենները, մակրոնները, մոսինիկները և մարերը (III, 94)։ Տիբարեններին, մոսինիկներին և մակրոններին կարելի է տեղադրել այն ճշգրիտ տվյալների օգնությամբ, որոնք մեզ հաղորդել է ափով անցած Քսենոփոնը։ Երեք այս ցեղերը տեղադրվում են Օրդուից (Կոտիորա) մինչև Տրապիզոն։ Ավելի դժվար են տեղադրվում մոսխերը (սատրապության կա՛մ ծայր արևմուտքում, կա՛մ ծայր հյուսիս-արևելքում)[4], բայց ամեն դեպքում պարզ է, որ սատրապությունը ձգվում էր Օրդու-Կոտիորայից, որտեղ հաստատապես տեղադրվում են տիբարենները, դեպի արևելք՝ մինչև Տրապիզոն, իր մեջ առնելով նաև ծովային խալիբներին, որոնք չեն հիշատակվում Հերոդոտի ցուցակում միայն այն պատճառով, որ նրանք մոսինիկների ենթական էին[5]։

Այս դեպքում ստացվում է, որ 13-րդ սատրապությունը ձգվում էր Կոտիորայից, որտեղ նա սահմանակից էր 19-րդ սատրապությանը, դեպի արևմուտք։ Թե որն է նրա արևմտյան սահմանը ծովափնյա այս հատվածում, նույնպես դժվար է ասել։ 3-րդ՝ կապադովկյան սատրապությունը, որը հարևան էր արևմուտքից, իր մեջ էր ամփոփում պափլագոնացիներին, փռյուգացիներին, ասիական թրակացիներին, մարիանդինցիներին և սիրիացիներին։

Պափլագոնիայի արևելյան սահմանը Հալիսի ստորին հոսանքն էր, նրանից դեպի արևելք կապադովկյան տերիտորիան էր տարածվում։ Ամիսոսը, օրինակ, հիմնադրված էր կապադովկյան ծովափում, իսկ Թեմիսկյուրեի հովտում ապրում էին լևկոսիրացիները։ Ամենայն հավանականությամբ հենց Թերմոդոնտի գետաբերանում ավարտվում էր 3-րդ սատրապությունը և սկսվում 13-րդը, ավելի ճիշտ՝ նրա առափնյա մասը, որը այդպիսով ընդգրկում էր Թերմոդոնտի ստորին հոսանքի ու գետաբերանի և Կոտիորայի միջև ընկած հատվածը։

Այսպիսով, հյուսիսային սահմանը, իր մեջ առնելով լեռնային խալդայներին, ավարտվում էր սասպերների երկրում՝ Ճորոխի վերին հոսանքում։ Այստեղ սկսվում էր 18-րդ սատրապությունը։

Արևելյան սահմանը.— Արևելքից 13-րդ սատրապությունը սահմանակից էր 18-րդ սատրապությանն ըստ երևույթին մի գծի վրա, որն անցնում էր Վանից արևելք, քանի որ Վանը, պետք է ենթադրել, 13-րդ սատրապության վարչական կենտրոնն էր։ Հավանաբար Հայկական պարն է կազմել երկու սատրապությունների սահմանը[6], որը Կարինի շրջանում թեքվում էր դեպի հյուսիս-արևմուտք։ Այդ գծից արևմուտք 13-րդ սատրապությունն էր՝ արմեն-

---

[4] Г. А. Меликишвили, К истории древней Грузии, Тбилиси, 1959, стр. 104.

[5] М. И. Максимова, Античные города юго-восточного Причерноморья, М.—Л., 1956, стр. 31, прим. 1.

[6] Քսենոփոն, Անաբասիս, թարգմ. Ս. Կրկյաշարյանի, Երևան, 1970 (տե՛ս Ս. Տ. Երեմյանի քարտեզը՝ Հայաստանը և Փոքր Ասիան ըստ Քսենոփոնի «Անաբասիսի»)։

ներով ու արմենների հարևաններով, դեպի արևելք 18-րդ սատրապությունն էր՝ սասպերներով, փասիաններով, տաոխներով, ալարոդներով և այլ ցեղերով[7]։

Հարավային սահմանը.— Միջագետքում 13-րդ սատրապությունը սահմանակից էր 5-րդ՝ «անդրգետյան» սատրապությանը։ Սահմանը երկու սատրապությունների միջև Արևմտյան Տիգրիսն էր կամ, որ պակաս հավանական չէ, Կաշչիարիի (Տուռ Աբդինի) լեռնաշղթան։ Տիգրիսից դեպի արևելք հայկական սատրապությունը սահմանակից էր Մատիանային, որը, ինչպես այժմ գիտենք, գրավում էր Ուրմիայի շրջանը և մտնում էր 18-րդ սատրապության կազմի մեջ։ Մատիանայի մասին ավելի մանրամասն կխոսվի 18-րդ սատրապության սահմանները քննելիս։

13-րդ սատրապության կազմի մեջ մտնող մարզեր, նահանգներ, գավառներ.— Մենք արդեն տեսանք, որ 13-րդ սատրապության կազմի մեջ մտնող հայկական երկիրը (dahyu, նեղ իմաստով) ըստ Հերոդոտի տվյալների գտնըվում էր Մատիանայի (այսինքն Ուրմիա լճի շրջանի) և Հալիս գետի ակունքների (այսինքն Փոքր Հայքի) միջև։ Որպես այդպիսին նա համապատասխանում էր Հայաստանի տարածքի մասին Քսենոփոնի «Կյուրոպեդիայում» պահպանված տեղեկություններին, որոնք բացահայտորեն անկախ են Հերոդոտից։ Արդեն այս ընդհանուր կարգի վկայություններից կարելի է որոշակի պատկերացում կազմել 13-րդ սատրապության մեջ ընդգրկված հին հայկական մարզերի մասին[8]։

Արքայական ճանապարհի՝ 13-րդ սատրապության տերիտորիայով անցնող հատվածի վերականգնումը կասկած չի թողնում, որ նրա կազմի մեջ էին մտնում Ծոփքն ու Աղձնիքը, ինչպես նաև Վանի ավազանը, քանի որ նրանից հարավ ու արևելք էր գտնվում սատրապությանը սահմանակից Մատիանան։ Մի շարք այլ տվյալներ ևս խոսում են այն մասին, որ Վան քաղաքը մտնում էր 13-րդ սատրապության կազմի մեջ։

Ստորև կտեսնենք, որ 13-րդ և 18-րդ սատրապությունները կազմում էին մի երկիր՝ Արմինան։ Սրա կենտրոնը պետք է լիներ անպայման Վանը, նախկին քաղաքական միավորման մայրաքաղաքը։ Նա չէր գտնվում 18-րդ սատրապության մեջ, որը տերիտորիալ տեսակետից կողմնորոշված էր դեպի Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելյան և արևելյան շրջանները և որը ուներ իր կենտրոնը՝ Արինբերդը։ Վանը պետք է գտնվեր 13-րդ սատրապության մեջ, որտեղ հայկական հոծ զանգված կար, որի անունով էլ ողջ միավորը Արմինա էր կոչվում։ Այստեղ, որպես այդ միավորի կենտրոնում էր գտնվում պարսից արքայից արքա Քսերքսեսի սեպագիր արձանագրությունը։

---

7 Ի. Դյակոնովը 13-րդ սատրապության կազմի մեջ է տեսնում խալիբ-խալդայներից բացի նաև տաոխներին, հեսպերիտներ-սասպերներին ու փասիաններին (И. М. Дьяконов. История Мидии, М.—Л., 1956, стр. 355)։ Խալդայները իսկապես մտնում էին 13-րդ սատրապության կազմի մեջ և նրանց պետք է հաշվել հայերի հարևանների շարքում։ Սակայն կա Հերոդոտի որոշակի վկայությունը սասպերների (նույն հեսպերիտների)՝ 18-րդ սատրապության կազմի մեջ մտնելու մասին։ Եթե այդպես է, ուրեմն նրանց հնագույն բնակավայրից՝ Սպերից դեպի արևելք գտնվող տաոխներն ու խալդայներից դեպի արևելք գտնվող փասիանները նույնպես պետք է մտնեին 18-րդ սատրապության կազմի մեջ։

8 Г. А. Капанцян, Хайаса—колыбель армян, Ереван, 1948, стр. 157.

Ինչպես տեսանք, 13-րդ սատրապության կազմի մեջ հաստատապես մտնում էր Արևմտյան Եփրատի աղեղից դեպի հյուսիս-արևմուտք ընկնող շրջանը ևս՝ Հալիսի ակունքների կամ ավելի ճիշտ՝ Արմենական լեռան շրջապատը, որը ոչ թե լոկ աշխարհագրական հասկացողություն էր, այլ գուցե նաև էթնովարչական։ Պարզ է, որ Հայաստանի հյուսիս-արևմտյան և հարավ-արևելյան ծայրերի միջև ընկած նահանգներն ու գավառները՝ Բարձր Հայքը, Տուրուբերանը մտնում էին 13-րդ սատրապության կազմի մեջ։

18-րդ սատրապություն։ Այս սատրապությունը ստեղծվել է ոչ թե նոր նվաճված հողերի վրա, այլ հայկական թագավորության, կամ, որ նույնն է, Արմինայի տարածքը վարչական բաժանման ենթարկելու և երկու սատրապություններ (13-րդ և 18-րդ) ստեղծելու եղանակով[9]։

Ինչպես արդեն երևաց, 18-րդ սատրապությունը իր մեջ ամփոփում էր հայկական թագավորության հյուսիս-արևելյան ու արևելյան շրջանները, աճելով միևնույն ժամանակ նոր մարդերի հաշվին։ Հերոդոտի վկայությամբ այստեղ էին բնակվում սասպերները, ալարոդներն ու մատիենները։ Ալարոդները ուրարտացիների մնացորդներ են, որոնք մ. թ. ա. V դարում դեռ ապրում էին Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելյան շրջաններում, գլխավորապես Արաքսի միջին հոսանքից հյուսիս։ Սասպերները, ինչպես տեսանք, գրավում էին Հայկական լեռնաշխարհի հյուսիսային շրջանները (Սպեր) ու տարածվում էին նրանից էլ դեպի հյուսիս-արևելք։ Մատիենները, որոնք իրավամբ նույնացվում էին խուռիների հետ, հիշատակվում են Հայկական լեռնաշխարհի տարբեր տեղերում, բայց Մատիանան՝ մատիենների երկիրը, տեղագրվում է Ուրմիա լճի մոտ, որը նաև Մատիանական լիճ է կոչվում։

Այժմ քննենք, թե ինչպես են ուրվագծվում այս սատրապության սահմանները։ Մենք տեսանք, որ 18-րդ սատրապությունը արևմուտքից հարում է 13-րդ սատրապությանը։ Հյուսիսում սատրապությունը ձգվում էր մինչև Պարխարյան ու Մեսխական լեռնաշղթաները[10] (որոնցից այն կողմ 19-րդ սատրապությունն ու Կողքիսն էին) և հասնում մինչև Կուր գետի վերին հոսանքի աղեղը։

Հյուսիս-արևելքից ու արևելքից սատրապության սահմանը Կուր գետն էր կազմում։ Վերջին տարիներին Կուրի հովտում, այդ թվում և ձախակողմյան մասում և անգամ նրանից շատ այն կողմ՝ Կախեթիայի դաշտերում գտնված աքեմենյան տիպի հուշարձանները կարող են վկայել այն մասին, որ

---

9 Կա Մ. Քիսլինգի կարծիքն այն մասին, որ 18-րդ սատրապությունը ստեղծվել է քիչ ավելի ուշ, 10-րդ մարական սատրապությունից Մատիանան անջատելու և մ. թ. ա. 516—515 թթ. նվաճված ալարոդներին ու սասպերներին Մատիանային միացնելու եղանակով (Max Kiessling. Zur Geschichte der ersten Regierungsjahre des Dareios Hystaspes, Leipzig, 1901. Տե՛ս O. Leuze, նշվ. աշխ., էջ 57)։ 18-րդ սատրապությունը ավելի ուշ ստեղծվելու կարծիքը փաստորեն պաշտպանում է և Ի. Դյակոնովը, որը սակայն, գտնում է, որ 18-րդ սատրապությունը ստեղծվել է ոչ թե նվաճման, այլ ընդհանուր հայկական սատրապությունից անջատվելու եղանակով (И. М. Дьяконов, История Мидии, стр. 348, 355).

10 Այս ժամանակաշրջանի մասին խոսելիս գուցե ավելորդ է հիշատակել Մեսխական լեռնաշղթան, քանի որ կարծիք կա, որ մեսխերը սկզբնապես գտնվում էին Փոքր Ասիայի հյուսիս-արևելյան մասերում, Օրդուից հարավ և միայն մ. թ. ա. IV—III դդ. է, որ տեղափոխվել են ժամանակակից Անդրկովկասի արևմտյան կողմերը՝ իրենց անունը տալով մեզ հետաքրքրող լեռնաշղթային, որից այն կողմ արդեն Կողքիսն էր։

*սատրապությունը տարածվել է Կուրից էլ այն կողմ Արևելյան Վրաստանում[11], մտնելով կամ գուցե և հանդիպելով 11-րդ՝ կասպիական սատրապությանը, որն իր մեջ ամփոփում էր արևելյան Անդրկովկասի հողերը։*

*Մատիանայի առկայությունը 18-րդ սատրապության կազմի մեջ ցույց է տալիս, որ վերջինս զգալիորեն ձգվել է դեպի հարավ և հարավ-արևելք։ Այստեղ հարկ է նորից նշել, որ 18-րդ սատրապությունը կազմավորվել էր հայկական թագավորության հողերի վրա, որոնց կցվել էր Մարաստանի մի ամբողջ շրջան՝ Մատիանան։ Հայկական ու մարական հողերի վարչական այսպիսի վերաբաժանումը Դարեհի կողմից իրագործվել է կայսրության կենտրոնական իշխանության դեմ կազմակերպված ապստամբությունների ժամանակ միասնաբար հանդես եկող Հայաստանն ու Մարաստանը պատժելու և նրանց լրացուցիչ կերպով թուլացնելու միտումով։*

*Մատիանայի, որպես 18-րդ սատրապության հարավային մարզի հետ առնչվող միակ դժվարությունը կապված է 13-րդ սատրապության և նրա ունեցած սահմանների հետ։ Մենք տեսանք, որ Հերոդոտը առնվազն երկու անգամ հավաստում է, որ արմեններին կամ Արմենիային հարևան են մատիեններր կամ Մատիանան (I, 72, V, 49, 52)։ Թվում է, թե դրանով հարցը լուծվում է, սակայն իրականում այն ավելի բարդ է։ Բանն այն է, որ Հերոդոտի վկայություններից մեկը կապված է Արքայական ճանապարհի՝ Հայաստանով ու Մատիանայով անցնող հատվածի նկարագրության հետ, որից բխող հետևությունները վեճի առարկա են դարձել[12]։ Ճանապարհը կա՛մ բուն Տիգրիսի վրայով՝ Ջեզիրե Իբն-Օմարի մոտ, կա՛մ արևելյան Տիգրիսի վրայով՝ Սղերդի մոտ Հայաստանից մտնում էր Մատիանա։ Պատմիչի ասելով այս երկրով հոսում են չորս նավարկելի գետեր՝ Տիգրիսը, երկու Զաբերը, որոնցից մեկը հոսում է Հայաստանից, իսկ մյուսը՝ Մատիանայից և Գինդը։ Զաբ գետի ակունքների մասին այս ճշտումն արդեն կարծես կասկածի տակ է դնում այս երկրի Հայաստանի կամ Մատիանայի մասը կազմելու իրողությունը։ Բայց ամեն դեպքում, թվում է (հենվելով նախ և առաջ Հերոդոտի վերոհիշյալ երկու բավականին որոշակի վկայությունների վրա), որ Մատիանան տարածվում էր նաև Զագրոսից արևմուտք՝ իր մեջ առնելով բուն Ասորեստանը մինչև Տիգրիս ու հավանաբար Կորդվաց լեռներում սահմանակից դառնալով 13-րդ սատրապությանը։*

*13-րդ և 18-րդ սատրապությունների կապակցությամբ պետք է ասել, որ հետաքրքիր արդյունքներ է տալիս Հերոդոտի սատրապական ցուցակի համեմատումը կայսրության կազմի մեջ մտնող երկրների՝ աքեմենյան արձանա-*

---

[11] Г. Г. Цкитишвили, Результаты работ на Цихиа-Гора (1971—1974 гг.). «Краткие сообщения Института археологии», № 151, М., 1977, стр. 92; Ю. М. Гагошидзе, Самадло, Тбилиси, 1979, стр. 52.

[12] *Հերոդոտի հիշատակած չորս գետերի երկիրը՝ բուն Ասորեստանը, որով անցնում էր Հայաստանից եկող Արքայական ճանապարհը, տարբեր սատրապությունների է վերագրվում։ Է. Մայերը այն կապում է Մատիանայի հետ ու մտցնում է 18-րդ սատրապության մեջ։ Օ. Լոյցեն այն համարում է 9-րդ բաբելական սատրապություն, իսկ Բերը՝ 13-րդ հայկական սատրապության մաս, հավանաբար ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ արմենական էթնիկական տարրը, ըստ Ստրաբոնի հանրահայտ վկայության, առաջ էր խաղացել մինչև Ադիաբենեն ու Կալաքենե՝ բուն Ասորեստանի տարածքը ու հաստատվել այնտեղ (տե՛ս* O. Leuze, *նշվ. աշխ.։ Տե՛ս նաև* Ernest Meyer-*ի գրախոսականը այդ աշխատության մասին՝* „Deutsche Literaturzeitung", 1936, Heft 3, S. 1490—1498).

գրություններում հիշատակվող ցուցակի հետ։ Համեմատությունից երևում է, որ այդ երկու սատրապությունները հիշատակվում են մեկ երկրի՝ Արմինայի անվան տակ[13]։ Սա շատ կարևոր հանգամանք է, որը համահնչյուն է ինչպես նախորդ, նույնպես և հաջորդ ժամանակաշրջաններին։ Մեկ միավորի գոյությունը թեկուզ մ. թ. ա. V դարում մեծ նշանակություն ունի հայկական ապագա պետությունների ճակատագիրը ճիշտ հասկանալու համար։

**Հայկական սատրապությունն ըստ Քսենոփոնի տվյալների (մ. թ. ա. 430—340-ական թթ.).**— Դարեհի ստեղծած սատրապական սիստեմը հիմնական գծերով դիմացավ մինչև աքեմենյան կայսրության խորտակումը։ Նրա մի շարք սկզբունքներ նույնիսկ որդեգրվեցին Ալեքսանդր Մակեդոնացու և իր հաջորդների կողմից։ Սակայն, այնուամենայնիվ, այդ սիստեմի մեջ ժամանակի ընթացքում բազմաթիվ փոփոխություններ տեղի ունեցան և Հերոդոտի ներկայացրած պատկերը սրբագրումների ենթարկվեց։

400 թ., երբ Քսենոփոնը Բյուրոց նահանջը գլխավորեց, արդեն նշմարելի էին լուրջ փոփոխություններ նախորդ շրջանի հետ համեմատած։ Փոքր Ասիայում մի շարք ցեղեր, որոնք ժամանակին ենթակա էին Աքեմենյաններին, այժմ դադարել էին տուրք վճարելուց և իրենց անկախ էին պահում (Քսենոփոնի ասելով՝ լիկաոնացիները, պիսիդացիները, իսավրացիները, պամփիլացիները)։ Կտրականապես փոխվել էր պատկերը նաև մերձսևծովյան շրջանում։ Այստեղ ապրող պոնտական ցեղերը (տիբարենները, մոսինիկները, մակրոնները), որոնք ենթակա էին աքեմենյան տերությանը և մաս էին կազմում 19-րդ սատրապության, այժմ, նույն Քսենոփոնի օրոք, անկախացած էին։ Խալդայները, որոնք Աքեմենյանների հպատակներն էին դեռևս Կյուրոսի ժամանակներից, կարծես նույնպես անկախացել էին։ Նույն վիճակում էին տաոխները։

Փոփոխության էին ենթարկվել նաև սատրապությունների սահմանները։ Այսպես, օրինակ, որոշ փոփոխություններ էին տեղի ունեցել 5-րդ և 9-րդ սատրապությունների սահմաններում։ Հնարավոր է կարծել, որ Արբելիտիսը՝ բուն Ասորեստանի տերիտորիան, որը 18-րդ սատրապությանն էր պատկանում, Մատիանայի հետ միասին կցվել էր բաբելա-ասորեստանյան 9-րդ սատրապությանը։ Հիմքեր կան պնդելու, որ Ուրմիո շրջանը՝ Մատիանան, երկար ընդմիջումից հետո նորից անցել էր Մարաստանին։ Առանց այս ակտի դժվար է հասկանալ մի քանի տասնամյակ անց տեղի ունեցող վերին՝ հյուսիս-արևմտյան Մարաստանի, այսինքն Ատրպատականի անջատումը և ինքնուրույնացումը։

Հայկական լեռնաշխարհի անմիջական հարևանությամբ տեղի ունեցող փոփոխությունները չէին կարող որոշ ազդեցություն չթողնել նրա վարչատերիտորիալ կառուցվածքի վրա, մանավանդ, որ այդպիսի փոփոխությունների համար կային նաև ներքին պատճառներ։ Հայ էթնոսի ձեռք բերած հաջողություններին զուգընթաց փոխվում էր վարչական նախկին բաժանումը։

---

13 И. М. Дьяконов, История Мидии, стр. 354. Ս. Տ. Երեմյան, Աքեմենյան պետությունը ըստ Բագհաստանայի արձանագրության մ. թ. ա. 520—519 թթ. (քարտեզ), Հայկական սովետական հանրագիտարան, հատ. II, Երևան, 1976, էջ 163։ Ինչպես հայտնի է, Արմինան հանդես է գալիս նաև Ուրաշտու անվան տակ։ Այստեղ, բացի ավանդույթից, աշխարհագրական միջավայրի ու քաղաքական գերի նույնությունից, հանդես է գալիս նաև այն հանգամանքը, որ Հայաստանում դեռևս կային ուրարտացիներ՝ ալարոդներ։

Մ. թ. ա. 400 թ. Հայկական լեռնաշխարհում տարբեր բաժանում գոյություն ուներ. «Արմենիա սատրապությունը» և իր ենթաշրջան «Արևմտյան Արմենիան» վարչական նախորդ միավորների հետ նույնացնելու ամեն մի փորձ դատապարտված էր ձախողման։ Դրա լավագույն ապացույցը այն է, որ 400 թ. գոյություն ունեցող միավորները, օրինակ՝ «Արևմտյան Արմենիան», ուսումնասիրողների կողմից նույնացվում են Դարեհի օրոք գոյություն ունեցող մե՛կ այս (13-րդ), մե՛կ այն (18-րդ) սատրապության հետ։ Քսենոփոնի հիշատակած վարչական շրջանների (ընդհանրապես Հայաստան, մյուսը՝ «Արևմտյան Հայաստան») փոխհարաբերության մասին կխոսենք ստորև։ Առայժմ քննենք երկուսի սահմանները։

Դատելով Նեմրութդաղի արձանագրություններից, Կոմմագենե երկիրը պետք է որ մտներ հայկական սատրապության կազմի մեջ, և հետևաբար Հայաստանի արևմտյան սահմանը անցնում էր ոչ թե Եփրատով, ինչպես Հերոդոտի օրոք, այլ նրանից արևմուտք։

Հարավից սահմանն էր Արևմտյան Տիգրիսը կամ նույն Կաշշիարիի (Մասիուսի) լեռնաշղթան։

Հարավային սահմանի արևելյան հատվածը հանվանե է հիշատակվում Քսենոփոնի կողմից. դա Կենտրիտես (Ջերմ, Արևելյան Տիգրիս) գետն էր[14]։

Բավականին դժվար է որոշակի բան ասել սատրապության հյուսիս-արևելյան սահմանի մասին։ Ամեն պարագայում սատրապության իրավասության տակ պետք է մտնեին արևելյան ընդարձակ շրջաններ, որոնք Կուր գետի մոտ հանդիպում էին Մարաստանին ենթակա տարածքին։ Մարական սատրապությունը, որը ինչպես կտեսնենք ավելի ուշ ժամանակաշրջանին վերաբերող տվյալներից (Արրիանոս, III, 8, 4), իր ազդեցության ոլորտի մեջ էր մտցրել արևելյան Անդրկովկասի մի քանի շրջանները, Կուրից այս կողմ միայն սակեսինների վրա որոշ իրավունքներ ուներ[15]։ Ուստի դժվար է կարծել, թե մարական սատրապությանը այս կամ այն կերպ ենթակա ցեղերի և հայկական սատրապության միջև ընկած տերիտորիաները քաղաքականապես վակուումային տերիտորիաներ էին։ Նախորդ շրջանների իրավիճակից և հաջորդ տասնամյակների փոփոխություններից դատելով հնարավոր է այդ տերիտորիաները հաշվել հայկական սատրապության մասը։ Որ սատրապության հյուսիս-արևելյան սահմանները կարող էին հասած լինել մինչև Կուր, երևում է նաև այն հանգամանքից, որ շատ ավելի ուշ ժամանակաշրջանում մերձկուրյան տափաստաններում հիշվող ցեղերը (աղվանները, ուտիները, գարգարները), այլ ցեղերի հետ (սիլվեր, լփիններ, լեգեր, գելեր) դեռևս Էրատոսթենեսի օրոք գտնվում էին Կուրից շատ ավելի դեպի արևելք, այսօրվա Դաղստանի լեռներում կամ Կասպից ծովի ափերին։

Սատրապության հյուսիսային սահմանն իր արևմտյան մասում բաժանում էր այն «Արևմտյան Արմենիա» միավորից և անցնում էր հավանաբար Արածանիի ստորին հոսանքով, ապա՝ Մեղրագետով, Վանա լճի հյուսիսային ափերով մինչև Արաքսի միջին հոսանքը, մոտավորապես Արարատ լեռան

---

14 Թե ում անցավ Ջերմից հարավ ընկնող տարածքը, այդ թվում և Աստրեստանը, դժվար է ասել։ Ամեն դեպքում՝ ոչ Մարաստանին, որի այս հողերի վրա ունեցած իշխանության մասին Քսենոփոնը խոսում է անցյալ ժամանակով։

15 И. М. Дьяконов, История Мидии, стр. 446 и сл.

մոտ՝ Բագրևանդի շրջանը (Արածանիի ակունքները) թողնելով «Արևմտյան Արմենիային»։ Արաքսով սահմանը գնում էր դեպի նրա վերին հոսանքը ու մի անորոշ կետից անհայտ ընթացքով շարունակվում էր դեպի հյուսիս, տաոխների երկրից արևելք։ Այստեղ սահմանը պետք է որ համընկներ Պարխարյան ու Մեսխական լեռնաշղթաներին, որոնք սատրապությունը բաժանում էին մերձսևծովյան հարավ-արևելյան տարածքից ու Կողքիսից։ Թողնելով լեռնաշղթաները, սահմանը անցնում էր Կուրի հոսանքով, նրա այսպես կոչված աղեղով։ Հավանաբար այս ժամանակ է, որ Հայաստանի կազմի մեջ է մտնում նրա ամենահյուսիսային գավառը՝ Խորձեանը, ինչպես նաև մոսխերի երկրի՝ Մեսխեթիայի մի մասը, մյուս մասերը անցնում են Կողքիսին ու ապա՝ Իբերիային։

Այս սահմաններին համեմատ նույն մոտավորությամբ կարելի է որոշել «Արևմտյան Արմենիայի» տարածքը։

Նրա հարավային սահմանը, ինչպես տեսանք, պետք է անցած լիներ Արածանիի ստորին հոսանքով, հաստատորեն Մեղրագետով, Վանա լճի հյուսիսային ափով։

Արևելյան սահմանը գժվար է որոշել. ամեն դեպքում «Արևմտյան Արմենիայի» կազմի մեջ էին մտնում ապագա Այրարատ նահանգի ամենաարևմըտյան շրջաններից Բագրևանդը և Բասենը։

Արևմտյան սահմանները գտնվում էին Եփրատից շատ ավելի դեպի արևմուտք՝ Կապադովկիայում։ Այդպիսին էր վիճակը 13-րդ սատրապության գոյության օրերին, այդպես էր «Արևմտյան Արմենիայի» ժառանգորդ Փոքր Հայքի գոյության օրերին։

Հյուսիսային սահմանները նույնպես կարելի է որոշել։ Արածանիի ակունքներից ոչ հեռու գետը անցնելուց և մի քանի անցում կատարելուց հետո հույները հասան հայկական գյուղերը, որտեղ իմացան, որ Հայաստանի հարևանը խալիբների երկիրն է։ Արդեն առիթ ունեցանք խոսելու այդ երկրի տեղադրման մասին։ Այն հիշատակվում է ուրարտական արձանագրություններում, Հեկատայոս Միլետացու մոտ, Քսենոփոնի երկու աշխատություններում, Ստրաբոնի, Դիոգորոս Սիկիլիացու և Պլինիոսի երկերում։ Այս աղբյուրներից երևում է, որ հայերը սահմանակից էին խալիբներին (ընդ որում խալիբները ապրում էին հյուսիսում, իսկ հայերը՝ հարավում) և որ նրանց բնակավայրերը պետք է փնտրել Եփրատի վերին հոսանքի երկու կողմերում, նրանից հյուսիս, Պոնտական լեռների հարավային լանջերում, ապագա Փոքր Հայքում։ Այս տվյալներից երևում է նաև, որ խալիբների երկիրը կամ խալդայական մարզը հարևան էր արևելքից տաոխներին, արևմուտքից՝ սկյութեններին և բաժանվում էր սրանցից Ճորոխի ստորին հոսանքով։

Հյուսիսային սահմանի արևելյան հատվածը (այսօրվա Էրզրումից դեպի արևելք) ավելի դժվար է որոշել, բայց մի բան պարզ է՝ այն զգալի չափով տեղափոխվել էր դեպի հյուսիս՝ իր մեջ առնելով Բասենը, Սպերը, հավանաբար և Տայքը։

Վերևում հիշատակված գյուղերից դուրս գալով՝ գյուղապետի դիտավորությամբ հույները չգնացին դեպի խալիբները տանող ճանապարհով, այսինքն դեպի հյուսիս-արևմուտք, այլ դեգերեցին հյուսիս-արևելյան ուղղությամբ, առանց ուղեցույցի, մինչև հասան Փասիս գետը, Արաքսի վերին հոսանքը։

Քսենոփոնի նկարագրության այս հատվածի ըմբռնման մեջ կան որոշ տարբերություններ, այդ պատճառով դիմենք տեքստին (Անաբասիս, VI, 6)[16]։

Քսենոփոնը պատմում է, որ վերոհիշյալ գյուղերից հետո իրենք գյուղապետի օգնությամբ առաջ գնացին երեք անցում (մոտավորապես 15 փարսախ$\times$5—75 կմ)։ Սակայն քանի որ գյուղապետը նրանց չէր տանում գյուղերով, ապա նրան ծեծեցին, որից հետո նա փախավ։ Ճիշտ է Մ. Ի. Մաքսիմովայի ենթադրությունն այն մասին, որ գյուղապետը գիտակցորեն է խուսափել բնակավայրերից և փաստորեն հույներին տարել է ոչ այն ճանապարհով, որը տանում էր դեպի խալիբների երկիրը։ Դրանից հետո, ասում է Քսենոփոնը, հույները գնացին 7 անցում, օրը մոտավորապես 5 փարսախ, ըստ ոմանց թարգմանությունների՝ «Փասիս գետի երկայնքով», ըստ այլոց՝ «մինչև Փասիս գետը»։ Տեքստը թույլ է տալիս առաջին թարգմանությունը քերականորեն ավելի ճիշտ համարել (παρὰ τὸν Φᾶσιν ποταμόν)։

Ամեն դեպքում, Փասիսի մի կետից հույները գնացին երկու անցում՝ 10 փարսախ։ Դեպի դաշտը տանող լեռնանցքում նրանց ճանապարհը փակեցին խալիբների, փասիանների և տաոխների միացյալ ուժերը։ Հաղթելով սրանց՝ հույները անցան լեռնանցքը և իջան դաշտ, որտեղ շատ գյուղեր կային։ Այստեղից հույները գնացին 30 փարսախ և հասան տաոխների երկիրը։ Քանի որ սրանց, ինչպես նաև խալիբների երկրի մասին որոշակի պատկերացում կա Քսենոփոնի մոտ, ապա Փասիսից այն կողմ լեռնանցքը պաշտպանող երեք ցեղերից փասիանների երկիրն էր, որ գտնվում էր դաշտում, և նույնիսկ մինչև տաոխներին հասնող տարածությունը նրանց էր պատկանում։ Այդ հաստատվում է մի այլ աղբյուրի, Դիոդորոս Սիկիլիացու՝ Սոֆայնետոս Ստյումֆալացու կողմից օգտագործված տվյալներով, որոնց համաձայն Փասիսը անցնելուց հետո հույները մտան փասիանների և խոյերի մարզերը։

«Անաբասիսի» վերջում տեղադրված իշխանավորների ցուցակից հայտնի է, օրինակ, որ փասիանները ենթակա էին «Արևմտյան Արմենիայի» կուսակալին՝ Տիրիբազին. այդ նշանակում է, որ «Արևմտյան Արմենիայի» տերիտորիան Արաքսի վերին հոսանքից հյուսիս էր գտնվում և հասնում էր մինչև տաոխների երկիրը։ Այս կողմերում, Ճորոխի հարևանությամբ էին գտնվում, պետք է կարծել, նաև հեսպերիտները, որոնք «Անաբասիսի» նույն ցուցակի համաձայն նույնպես ենթակա էին Տիրիբազին։

Սակայն խալիբների և տաոխների երկրների դրացիությունը «Արևմտյան Հայաստանի» և ինչպես կտեսնենք՝ ընդհանրապես հայկական սատրապության հետ, նրանց առկայությունը սատրապական զորքերում որպես վարձկաններ, նրանց համառ դիմադրությունը արքայից արքայի թշնամիներին՝ հույներին և հատկապես այդ դիմադրության կազմակերպված բնույթն ու դաշնակցային եղանակը՝ իրարից տարբեր երեք ցեղախմբերի ռազմիկների միասնաբար հանդես գալու հանգամանքը, ենթադրել է տալիս մի ինչ-որ գերագույն ուժի, իշխանության առկայության մասին։ Քանի որ երեք ցեղերից փասիանները հականե-հանվանե են հիշատակված որպես Տիրիբազին ենթա-

16 Այդ մասին տե՛ս Գ. Տիրացյան, «Անաբասիսը և Հայաստանը» մեկնությունը (Քսենոփոն, «Անաբասիս», էջ 226)։

կա, ապա պարզ է, որ խալիբներն ու տաոխները ևս ինչ-որ կախման մեջ էին «Արևմտյան Հայաստանից»[17]։

Սա հաստատվում է նաև այդ ցեղերի հետագա պատմությամբ։ Մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին, Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքի օրերին, Սպերը հայկական սատրապության մասն էր (Ստրաբոն), իսկ մ. թ. ա. II դարում, բայց ամենայն հավանականությամբ նրանից առաջ էլ, խալիբները «Արևմտյան Հայաստանի» ժառանգորդ Փոքր Հայքին էին ենթարկվում Վերին Եփրատի շրջանում և դրանից հյուսիս (Ստրաբոն)։

Հայկական սատրապության մեջ մտնող մարզեր.— Դատելով կոմմագենյան արձանագրություններից՝ դրանցից մեկը Կոմմագենեն էր։ Քանի որ Կենտրիտեսը Հայաստանի հարավային սահմանն էր, ապա նրանից հյուսիս գտնվող Մոկաց աշխարհը նույնպես պետք է համարել Հայաստանի կազմի մեջ։ Կենտրիտեսը անցնելուց հետո հույները գնացին մի շրջանով, որտեղ Տիգրիսի ակունքներն էին գտնվում, և որոնք նրանք կտրեցին անցան։ Խոսքը պետք է որ Արևմտյան Տիգրիսի ակունքների արևելյան խմբի մասին եղած լինի. դա ցույց է տալիս, որ պատմական Աղձնիքը մտնում էր սատրապության կազմի մեջ։ Եթե այդպես է, ապա Կոմագենեի և Աղձնիքի միջև տարածված Ծոփքը նույնպես պետք է համարել սատրապության մաս, մանավանդ, որ դրանից մի քանի տասնամյակ առաջ այդպես էր և Եփրատն էր Հայաստանի սահմանը։

Վանա լճի արևելյան կողմերը Վան քաղաքով, ամենայն հավանականությամբ, մտնում էին սատրապության կազմի մեջ։ Վան-Երվանդավանը սատրապության գլխավոր կենտրոնն էր։ Արաքսից դեպի արևելք գտնվող նահանգների՝ Այրարատի, Սյունիքի, Ուտիքի և Արցախի մասին այս առումով տեղեկություններ չունենք։

Շատ հավանական է, որ 400 թ. Արմենիա սատրապությունը վարչական տեսակետից ժառանգորդը հանդիսանար մ. թ. ա. VI և V դդ. աքեմենյան արձանագրություններում հիշատակվող Արմինա ընդհանուր երկրի, որի կազմի մեջ, ի դեմս 18-րդ սատրապության, մտնում էին նաև Հայկական լեռնաշխարհի արևելյան և ծայրարևելյան մարզերը։

«Արևմտյան Հայաստան» կոչված ենթաշրջանի մարզերն էին[18] Տուրուբերան նահանգը՝ Տարոնով, Այրարատի արևմտյան գավառները, Բասենը և գուցե Բագրևանդը, Տայքի հարավային մասերը, գուցե Բարձր Հայքի շրջանները Ճորոխի և Արաքսի միջև, Բարձր Հայքի Եկեղյաց գավառը, ինչպես նաև անդրեփրատյան շրջանները (պոտենցիալ տերիտորիաներ էին Խաղտիքն ու Տայքը)։

Մի միասնական հայկական սատրապություն գոյություն ունենալու մասին մի քանի փաստեր.— Այս հարցը ծագել է «Արևմտյան» և այսպես կոչ-

---

17 Г. А. Меликишвили, К истории..., стр. 267—268.

18 Քննության առնված երկու միավորների՝ «Արմենիայի» ու «Արևմտյան Արմենիայի» նույնացումը Երվանդունիների Հայաստանի և Արմե-Շուպրիայի թագավորության հետ (տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայկական առաջին պետական կազմավորումները, «Պատմա-բանասիրական հանդես», 1968, № 3, էջ 109) չի համապատասխանում իրականությանը։ Ինչպես տեսանք, Արմե-Շուպրիան գտնվում էր Արածանիից հարավ, իսկ «Արևմտյան Արմենիան»՝ Արածանիից ու Մեղրագետից հյուսիս։ Այդքանն էլ բավական է ցույց տալու համար առաջարկված նույնացման պայմանական բնույթը։

ված Արևելյան Արմենիա հասկացությունները քննության առնելիս։ Այդ կապակցությամբ պարզվեց, որ Արևելյան Հայաստանը ոչ միայն որպես անուն, տերմին գոյություն չունի սկզբնաղբյուրներում, այլ որ այն, ինչի տակ հասկացվում է Արևելյան Հայաստանը, աշխարհագրական բովանդակություն չունի։ Այդ սխալը գալիս էր Քսենոփոնի հիշատակած երկու շրջանները Հերոդոտի օրոք Հայկական լեռնաշխարհում հիշատակված երկու՝ 13-րդ և 18-րդ սատրապությունների հետ ամեն դեպքում նույնացնելու ձգտումից։ Փաստերը ցույց տվին, որ այդ համադրվող միավորները իրար ծածկող հասկացություններ չեն։

Այս կապակցությամբ ուսումնասիրողները ուշադրություն դարձրին այն հանգամանքին, որ «Արևմտյան Հայաստանից» բացի կա պարզապես Հայաստան սատրապություն, որը «ընդարձակ և բարեկեցիկ» երկիր էր։ Այս դեպքում արդեն կարելի էր ասել, որ մեկը ընդհանուր հասկացողություն է, մյուսը՝ մասնակի։ Այդ հաստատվեց նաև երկու միավորների իշխանավորների տիտղոսների համեմատումից։ Եթե Օրոնտեսը սատրապ է՝ Հայաստանի կառավարիչ, ապա Տիրիբազը հյուպարքոս է «Արևմտյան Հայաստանի»։ Ճիշտ է, այս տերմինները ինչ-որ մաթեմատիկական ճշտությամբ չէին կիրառվում ու ինքնին ցույց են տալիս գոյություն ունեցող հիերարխիական տարբերությունը, բայց այս կոնտեքստի մեջ իրար մոտ հիշատակված լինելը հատկանշական է։ Եթե Տիրիբազը բարձրաստիճան արքունական էր, Երվանդ-Օրոնտեսը, այդ լինելով հանդերձ, նաև թագավորի փեսա էր։ Դա նրան և իր հաջորդներին մեծ առավելություններ էր խոստանում։

Օրոնտեսի՝ հայկական սատրապության իշխանավորի բանակում մենք հանդիպում ենք վարձկան խաղդայներին։ Ինչպես հայտնի է, խաղդայները հարևան էին անմիջականորեն «Արևմտյան Հայաստանին» և ըստ երևույթին որոշ չափով ենթակա նրան։ Ուստի խաղդայները, որոնք չէին մտնում Օրոնտեսի անմիջական տիրույթների մեջ, կարող էին նրան ենթարկվել միայն այն դեպքում, եթե Օրոնտեսին համարենք նաև «Արևմտյան Հայաստանի» տիրակալ և հատկապես՝ ամբողջ Հայաստանի իշխանավոր։

Վերջապես, Տիրիբազի իրավասության տակ գտնվող տերիտորիայում, այն հարցումին, թե ինչ երկիր է սա, գյուղապետը պատասխանում է՝ Հայաստան, առանց որևէ հավելյալ բառի (IV, 5, 34), տալով, հետևաբար, երկրի ընդհանուր անունը։

Այսպիսով, 400 թ. մենք ունենք մի ընդհանուր երկիր՝ Հայաստան (որի իշխանավորն է Օրոնտեսը), մի ենթաշրջանով՝ «Արևմտյան Հայաստան»։ Այս իրավիճակը հաստատվում է հաջորդ դարերի զարգացումով, որը նույնիսկ ավելի շեշտակի է դարձնում նշված փոխհարաբերությունը։ «Արևմտյան Հայաստանը» հիմնականում մղվում է Եփրատից այն կողմ, դեպի հյուսիս և արևմուտք և վեր է ածվում Փոքր Հայքի։ Նրա այսրեփրատյան տերիտորիաների զգալի հատվածը անցնում է Երվանդունիների թագավորությանը, որն ընդգրկում էր Հայկական լեռնաշխարհի մեծ մասը։ Օրոնտեսի և ոչ թե Տիրիբազի հաջորդներն են դառնում այդ Հայաստանի թագավորներ։

Մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին կազմավորվող հայկական թագավորության տերիտորիան քննության ենթարկելուց առաջ պետք է խոսել երկու հիմնական հետևությունների մասին։ Ուրարտական պետության անկու-

մից հետո Հայկական լեռնաշխարհում կազմավորվող հայկական քաղաքական և վարչական հնագույն միավորները հենց սկզբից ի վեր ընդգրկել են այդ լեռնաշխարհի զգալի տարածություններ։ Պետք է հատկապես նշել, որ ի տարբերություն նախաարտաշեսյան հեղհեղուկ, ամորֆ և ծավալով փոքր կազմավորումների մասին գոյություն ունեցող կարծիքի, հնարավոր է դառնում հիմնավորել ուրարտական պետության սահմաններում ծնունդ առնող հայկական թագավորության առկայության փաստը, որն իր մեջ էր ամփոփում մի միասնական տերիտորիա և ոչ թե Հայկական լեռնաշխարհի առանձին, երբեմն իրարից կտրված մարզեր։ Այդպիսին էր դրությունը համարյա թե ամբողջ VI դարում (մ. թ. ա.) ներառյալ վաղաքեմենյան ժամանակաշրջանը։

Դարեհի օրոք է, որ լուրջ փոփոխություններ են տեղի ունենում Հայկական լեռնաշխարհի տերիտորիայում, բայց այս երևույթները որոշ առումով է՛լ ավելի հատկանշական են։ Չնայած գոյություն ունեցող վարչական բաժանմանը, մենք տեսանք, որ Հայկական լեռնաշխարհը հանդես է գալիս մի անվան տակ, որպես մի միասնական երկիր։

Ամբողջական այս Արմինան, որն ի դեպ ծավալուն հասկացողություն է, քան նույնիսկ Ուրարտուն, և որի համարժեքն է նա պարսկական արձանագրություններում, կարևոր մի փաստ է նախաարտաշեսյան Հայաստանի տերիտորիալ-քաղաքական ճակատագիրը ճիշտ ըմբռնելու համար, նույնիսկ օտար տիրապետության պայմաններում։ Նույնը վերաբերում է աքեմենյան տիրապետության այսպես կոչված երկրորդ ժամանակաշրջանի իրավիճակին, որի հիմնական գծերը արձանագրել է Քսենոփոնն իր «Անաբասիսում»։ Այստեղ ևս գոյություն ունի մեծ, տարածուն միավոր՝ Հայաստան սատրապություն, որն իր տերիտորիալ ընդգրկումով մոտենում է Հայկական լեռնաշխարհի բնական սահմաններին։ Մոտ 7—8 տասնամյակ են բաժանում այս սատրապությունը ինքնուրույն պետության ստեղծումից։ Նախաարտաշեսյան ժամանակաշրջանում հայերի պատմությունը պայմանավորած և մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին Երվանդունիների պետության ստեղծմանը հանգեցրած պրոցեսներից կարևորագույնն են հասարակության դասակարգային շերտավորումը և հայ էթնոսի առաջընթացը։ Այս երևույթների գլխավոր արգասիքներից մեկը հայկական միավորների (վարչական թե քաղաքական) նաև տերիտորիալ փոփոխություններն էին այս կամ այն փուլում։

Եվ իսկապես, առանց հաշվի առնելու էթնոգենեզի և դասակարգային հարաբերությունների հասունացման երևույթները, չի կարելի հասկանալ հայկական միավորների պատմության առանձնահատկությունները, այդ թվում նաև տերիտորիալ հաջողությունները ծայրամասերում։ Երբ համեմատում ենք Երվանդունիների օրոք հայերի սոցիալ-տնտեսական վիճակը Հայկական լեռնաշխարհի ծայրամասերում ապրող ցեղերի, ցեղախմբերի զարգացման աստիճանի հետ, չնայած նյութերի սղությանը, չենք կարող չնշել այն մեծ տարբերությունը, որ գոյություն ուներ և որը, տվյալ դեպքում, ուժեղ ազդակ էր էթնոգենեզի պրոցեսների համար, որոնք անխուսափելիորեն ուղեկցվում էին տերիտորիալ ձեռքբերումներով։ Եթե այս օրինաչափական էր որպես կանոն ծայրամասային ցեղերի համար, որոնք դեռ նոր էին թևակոխել նախնադարյան-համայնական հասարակության զարգացած փուլը, նույնը չի կարելի ասել ուրարտացիների մնացորդների մասին, որոնք կլանվեցին նաև քաղաքական ուժի բերումով։

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՕՐՈՔ (Մ. թ. ա. 330—201 թթ.)

Մ. թ. ա. IV դարի վերջին երրորդ—III դարի առաջին տասնամյակներ.— *Երվանդունիների երկրորդ թագավորությունը կազմավորվեց հայկական սատրապության սահմաններում։ Փաստերը ցույց են տալիս, այնուամենայնիվ, որ այն ընդարձակվել է «Արևմտյան Հայաստան» ենթաշրջանի հաշվին, որն իր հերթին, ինչպես հայտնի է, որոշ փոփոխություններով վերածվեց Փոքր Հայքի։*

*Այժմ ծանոթանանք այս երկու միավորների սահմաններին։*

*Ամեն ինչից երևում է, որ «Արևմտյան Հայաստան»-Փոքր Հայքը դուրս մղվեց Հայկական լեռնաշխարհի բուն տարածքից, բայց ոչ լրիվ։ Երվանդունիները արագությամբ տիրացան երկու՝ Արևելյան և Արևմտյան Եփրատների միջև ընկած հիմնական տարածքին, որն առաջ «Արևմտյան Հայաստան» ենթաշրջանի մասն էր կազմում։ Սակայն Արևմտյան Եփրատի վերին հոսանքի երկու կողմում (Կարինում, Դերջանում և հավանաբար Եկեղիքում) և նրանից հյուսիս, որտեղ վկայված են խալդայներն ու մոսինիկները, ինչպես և Եփրատից արևմուտք տարածվում էին Փոքր Հայքի տիրույթները։ Փոքր Հայքը այժմ գրավում էր Բարձր Հայքի լեռները, ամբողջ անդրեփրատյան Հայաստանը ու մերձծովյան տարածք։ Որպես 13-րդ սատրապության և հատկապես «Արևմտյան Հայաստան» ենթաշրջանի մոտավոր ժառանգ Փոքր Հայքը տարածվում էր մինչև Սև ծով՝ Փառնակիայի ու Տրապիզոնի միջև, իրեն ենթարկելով տիբարեններին ու խալդայներին*[19] *(Ստրաբոն, XII, 3, 28)։ Սա այն դեպքն է, երբ լեռնային ու ծովային խալդայները գտնվում էին միևնույն միավորման կազմում։*

*Կարինի շրջանում, Երվանդունիների սահմանագիծը գնում էր դեպի հյուսիս-արևմուտք, կարծես հետևելով 13-րդ և 18-րդ սատրապությունների սահմանի ուղղությանը ու ապա ընթանում հյուսիս-արևելյան կամ անգամ արևելյան ուղղությամբ՝ իր մեջ հաստատապես առնելով Սպերը, Տայքը, Գուգարքը։ Վերևում տեսանք, որ Երվանդունիների երկրորդ թագավորության առաջացման նախօրեին արդեն Սպերը մտնում էր հայկական սատրապության կազմի մեջ։ Մոտավորապես մ. թ. ա. 332 թ. վերաբերող Ստրաբոնի այս վկայության ու հեսպերիտների (Սպերի բնակիչների)՝ «Արևմտյան Հայաստանի» կուսակալին՝ Տիրիբազին ենթարկվելու մասին Քսենոփոնի մ. թ. ա. 401—400 թթ. վերաբերող տեղեկության միջև անցել էր ընդամենը 70 տարի, բայց այդ ժամանակամիջոցում Սպերը լրիվ ու վերջնականապես ընդգրկվել էր նախ Հայ-*

---

[19] *Այս երեք միավորների սահմաններն անկասկած իրարից խիստ տարբերվում են, չնայած դրանց մեջ ընդհանուր շատ բան կա։ Ծովափ դուրս գալու կապակցությամբ պետք է ասել, որ եթե 13-րդ սատրապությունը և Փոքր Հայքի սահմանները հասնում էին մինչև Սև ծով, ապա «Արևմտյան Հայաստան» ենթաշրջանը, ինչպես երևում է Քսենոփոնի մանրամասն նկարագրությունից, ծով դուրս չէր գալիս։ Մեզ հայտնի չէ, թե ինչ վկայություն ի նկատի ունի Մ. Մաքսիմովան, երբ գրում է, որ Փոքր Հայքի սահմանները հասնում էին մինչև Հալիսի գետաբերանը* (М. И. Максимова, *նշվ. աշխ., էջ 111)։ Ծովափի ուսումնասիրությունը, այնուամենայնիվ, կասկած չի թողնում որ նրա մի մեծ հատված՝ Սինոպից սկսած (որի արվարձանն Արմենե անունն էր կրում) մինչև Տրապիզոն կրել է այդ հատվածի* Hinterland*-ում կազմավորվող հայկական էթնոքաղաքական տարբեր միավորումների ազդեցությունը։*

կական սատրապության ու ապա՝ թագավորության սահմանների մեջ։ Նույնը պետք է ասել Տայոց աշխարհի՝ Տայքի մասին, որը վաղուց բռնել էր հայացման ուղին և մ. թ. ա. 400 թ. կախման մեջ էր «Արևմտյան Հայաստան» ենթաշրջանից, իսկ այժմ՝ մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին մտել էր հայկական թագավորության կազմի մեջ։ Նույնը վերաբերում է նաև Գուգարքին։ «Քարթլիս Ցխովրեբայում» որոշ տեղեկություններ են պահպանվել վերոհիշյալ շրջաններում հայոց Երվանդ թագավորի կատարած նվաճումների մասին (Ծունդա քաղաքը և Արտահանը մինչև Կուր գետը)[20]։ Այս Երվանդը, սակայն, Մովսես Խորենացու և Ստրաբոնի կողմից հիշատակված մ. թ. ա. III դարի վերջի թագավորը չէ, որին գահընկեց է արել ու սպանել Արտաշես I-ը։ Դատելով վրաց պատմիչի կողմից նրան տված «մեծ» ածականից՝ խոսքը, ամենայն հավանականությամբ, մ. թ. ա. 330/329 թ. գահակալած հայոց թագավորի մասին է, որը միավորեց Հայկական լեռնաշխարհի զգալի մասը իր հիմնադրած թագավորության կազմում։ Այնուհետև պետության սահմանն անցնում էր Պարխարյան և մեսխական լեռնաշղթաներով, Կուրի վերին հոսանքի աղեղով։

Հյուսիս-արևելքում և արևելքում սահմանը ձգվում էր Կուրով՝ իր մեջ առնելով Շակաշենը, որի բնակիչները մինչ այդ ինչ-որ կախման մեջ էին Ատրպատականից[21]։

Հարավ-արևելքում սահմանն անցնում էր Արաքսի ստորին հոսանքով կամ նրանից էլ հարավ՝ «Հայկական լեռներով», ապա Ուրմիայի հյուսիսային ափերով և միանում էր սահմանի հարավային գծին, որն ընթանում էր Արևելյան և Արևմտյան Տիգրիսներով կամ նրանցից հարավ, Կորդուքի ու Կաշշիարիի լեռներով։ Սահմանը Կորդվաց լեռներով անցնելու մասին ոչ այնքան որոշ, բայց հետաքրքիր ակնարկ է պահպանվել Արրիանոսի մոտ, որը վերաբերում է Դարեհ III-ի փախուստին Գավգամելայի ու Արբելայի ռազմադաշտից։ Դարեհը փախչում էր Մարաստան՝ ուղղություն բռնելով «Հայկական լեռները», ասում է պատմիչը (Ալեքսանդրի արշավանքը, III, 16). պետք է հասկանալ՝ Կորդվաց սահմանային հայկական լեռները, որտեղից կարելի էր անցնել Մարաստան։

**Մ. թ. ա. III դար (80-ական թթ. մինչև դարի վերջ).—** Սելևկյանների հետևողական միջամտությունը աղետաբեր եղավ Երվանդունիների թագավորության ճակատագրի համար։ Ճիշտ է, այդ միջամտությունը միայն դարի վերջին ավարտվեց Հայաստանի վերջնական նվաճումով, որով երկիրը բա-

---

[20] Леонтий Мровели, Картлис Цховреба (под ред. С. Г. Каухчишвили), Тбилиси, 1955, стр. 44—50.

[21] И. М. Дьяконов, История Мидии, стр. 447։ Որ Ուտիքը մտնում էր Երվանդյան պետության կազմի մեջ, երևում է Մովսես Խորենացու մի ակնարկից (Բ, 44)։ Բացառված չէ, որ արդեն նույն Երվանդունիների օրոք, Կուրից հյուսիս-արևելք գտնվող, այսպես կոչված, «Անդրկուրյան Հայաստանի» հողերը, հատկապես Կամբեճանը (տե՛ս Г. А. Меликишвили, К истории..., стр. 123, 127; А. Ш. Мнацаканян, О литературе Кавказской Албании, Ереван, 1969, էջ 28 և 38—41), մտել են հայկական պետության կազմի մեջ։ Այս հարցում ևս էթնոքաղաքական գործոններից բացի իրեն զգացնել է տվել նախորդ ժամանակներից եկող իրավիճակը։ Բանն այն է, որ ինչպես արդեն տեսանք վերևում, 18-րդ սատրապությունը, որի տարածքի մեծ մասը ժառանգեց Երվանդունի պետությունը, իր մեջ կարող էր ամփոփած լինել նաև անդրկուրյան հողեր։

ժանվեց սելևկյան երկու ստրատեգիաների, բայց արդեն մինչև այդ իրադարձությունը երկիրը կորցրել էր իր տերիտորիալ ամբողջականությունը[22]։ Այս դեպքում իրենց զգացնել տվին առնվազն երկու գործոն. երկրի ներսում կենտրոնախույս ուժերի ազդեցությունը, որը հանգեցրեց պետության տրոհմանը երկու մասի, և երկրի դրսում օրըստօրե ուժեղացող հարևան պետությունների ոտնձգությունները։ Մ. թ. ա. III դարի 70-ական թթ. միասնական պետության կազմից անջատվեց արևմտյան Երվանդունիների՝ Ծոփքի ու Կոմմագենեի միացյալ թագավորությունը՝ սկզբում Սամոսատ (Եփրատի ափին), ապա՝ Արշամաշատ (Արածանիի ափին) կենտրոններով։

Արևմուտքից այդ պետությունը սահմանակից էր Կապադովկիային ու Կիլիկիային (Կիլիկյան Տավրոսի ու Ամանոսի լեռներ)։

Արևելքից նա սահմանակից էր Աղձնիքին, որի մի մասը, Սամոկերտ քաղաքով, մտնում էր պետության կազմի մեջ։

Հարավից, Եփրատի երկու կողմերում, պետությունը սահմանակից էր Ասորիքին, իսկ հյուսիսից՝ Արածանիին։

Վրացական պետության հիմնադրմանը (մ. թ. ա. III դարի առաջին կես) հաջորդող տասնամյակներում Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիս-արևելյան որոշ շրջաններ անցան այդ պետության տնօրինության տակ և այդ վիճակում մնացին մինչև մ. թ. ա. II դարի սկիզբը, երբ Արտաշեսի օրոք նորից միացվեցին Հայաստանին։ Այդ միացման ակտը հավաստող Ստրաբոնի վկայությունից երևում է, որ վրացիները հայերից ժամանակավորապես վերցրել էին Պարիադրեսի լանջերը, այսինքն Սպերն ու Տայքը, Խորձեան գավառը և Գուգարքը։ Հավանաբար այս իրավիճակը նկատի ունի մ. թ. ա. II դարի պատմագիր Ապոլլոդորը (տե՛ս Ստրաբոն, I, 3, 21), երբ ասում է, որ վրացիներին հայերից բաժանում է Արաքսը, որը իր վերին հոսանքում կարող էր ժամանակավոր սահման կազմել երկու պետությունների միջև[23]։

Մ. թ. ա. III դարը ականատես եղավ Հայաստանի հարևան մի այլ պետության հզորացմանը ևս։ Պոլիբիոսի մ. թ. ա. 220 թ. վերաբերող տվյալների համաձայն Ատրպատականի պետությունը զգալի չափով ընդլայնել էր իր տիրույթներն Անդրկովկասում, որի արևելյան հատվածները, ինչպես տեսանք, դեռևս մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին Ատրպատականի ազդեցության ոլորտի մեջ էին գտնվում[24]։ Հաջորդ, III դարի կեսին, հավանաբար, է՛լ ավելի նպաստավոր պայմաններ ստեղծվեցին Ատրպատականի քաղաքական էքսպանսիայի համար, որի ընթացքում Հայաստանի հարավ-արևելյան որոշ շրջաններում կարող էր Ատրպատականի դերիշխանությունը հաստատված լինել։

Ատրպատականի մեծապետական ձգտումների առաջն առավ Սելևկյան Անտիոքոս III-ը, որը 220 թ. արշավեց Ատրպատական և այն հպատակեցրեց։

Ատրպատականի նվաճումները ի դերև անցան։ Մ. թ. ա. II դարի սկզբներին Արտաշեսը Ատրպատականից ետ գրավեց Կասպիանեն, Փավնիտիսը և

---

22 Այնքան էլ հեռու չէ ճշմարտությունից Հ. Հյուբշմանը (որին որոշ վերապահությամբ միանում է Հ. Մանանդյանը), երբ ասում է, որ նշված ժամանակաշրջանում 15 նահանգներից միայն չորսն էին (Չորրորդ Հայքը, Աղձնիքը, Տուրուբերանը և Այրարատը) մտնում Հայաստանի կազմի մեջ (Հ. Մանանդյան, Քննական տեսություն, Ա, էջ 103)։

23 Г. А. Меликишвили, К истории..., стр. 291.

24 И. М. Дьяконов, История Мидии, стр. 446—448.

*Բասորոպեդան ու նորից միացրեց Հայաստանին։ Մ. թ. ա. III դարում Հայաստանը կորուստներ էր տվել նաև հարավում, որտեղ ասորիները տիրացել էին Տամորիտիսին (Տմորիք) և արևմուտքում, որտեղ Ակիլիսենեն անցել էր կատաոններին։ Սակայն այս շրջանները ևս ետ վերցվեցին II դարի սկզբներին և միացվեցին մեկը Մեծ Հայքին, մյուսը՝ Ծոփքին։*

*Փոքր Հայքից խլելով Կարինն ու Դերջանը, իսկ Ծոփքից՝ Եկեղիքը, Արտաշեսը վերամիավորեց Մեծ Հայքը իր բնական սահմանների մեջ, բացառությամբ Ծոփքի թագավորության, որը, սակայն, Տիգրան II-ի օրոք միացվեց Մեծ Հայքին։*

## ТЕРРИТОРИЯ ЕРУАНДИДСКОЙ АРМЕНИИ (КОНЕЦ VI—КОНЕЦ III вв. до н. э.)

Кандидат историч. наук Г. А. ТИРАЦЯН

**(Резюме)**

После падения Урартского государства в начале VI в. до н. э. на территории Армянского нагорья образовалось армянское царство Ерруандидов, просуществовавшее до II в. до н. э. В статье рассматривается территория Армянской сатрапии и второго Еруандидского царства, обсуждаются вопросы исторической географии древней Армении.